Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10 ՄԱՅԻՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։




# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔ ՆՎԱՃԵԼՈՒ ՀԱՄԱՐ


Վ. ՄԱՑԿԵՎԻՉ

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրի առաջին տեղակալ


Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան և Փետրվար-մարտյան պլենումները մեծագույն խնդիր դրեցին՝ սոցիալիստական ինդուստրիայի հզոր աճման բազայի վրա ապահովել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքը, երկու—երեք տարվա ընթացքում լիովին բավարարել մեր երկրի ամբողջ բնակչության աճող պահանջները ժողովրդական սպառման ապրանքներով, իսկ թեթև և սննդի արդյունաբերությունը՝ հումքով։

Այդ խնդրի հաջող լուծման համար մեծ





նշանակություն ունի գիտության նվաճումների և առաջավոր փորձի պրոպագանդան ու արմատավորումը արտադրության մեջ։

Առաջավոր կոլտնտեսությունները, ՄՏԿ-ները և սովխոզները, գյուղատնտեսության նորարարները լայնորեն կիրառելով գիտության նորագույն նվաճումները և առաջավոր պրակտիկան, հարուստ փորձ են կուտակել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներից բարձր և կայուն բերք ստանալու, անասնապահության բարձր մթերատվության հասնելու և ժամանակակից գյուղատնտեսական տեխնիկան բարձր արտադրողականությամբ օգտագործելու ասպարեզում։

Շատ կոլտնտեսություններ և ամբողջ շրջաններ հեկտարից ստանում են 150—200 փութ ցորեն, 50 ցենտներից ավելի եգիպտացորեն և հեկտարից 700—800 ցենտներ սիլոսի կանաչ մասսա։

Առաջավոր կոլտնտեսություններում կարտոֆիլի բերքը հեկտարից հասնում է 200—300 ցենտների, իսկ շատ առաջավորներ հեկտարից ստանում են 500—600 ցենտներ կարտոֆիլ և բանջարեղեն։

Առաջավոր կոլտնտեսություններում և սովխոզներում մեկ կովի միջին կաթնատվությունը հասնում է չորսից—հինգ հազար և



ավելի լիտրի, մեկ ոչխարի միջին բրդատվությունը 6,5—7 կգ., յուրաքանչյուր հարյուր հեկտար վարելահողի դիմաց ստացվում է երկուսից մինչև չորս տոննա խոզի միս։

Մեր երկրում առաջավոր փորձը ազգային կապիտալ է, սովետական ժողովրդի հպարտությունը։

Կոլտնտեսային գյուղացիության, ՄՏԿ-ների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների և կազմակերպիչների անսպառ ստեղծագործական նախաձեռնությունը երևան է բերում խոշոր սոցիալիստական տնտեսությունը վարելու ագրոտեխնիկական և զոոտեխնիկական նորանոր առաջավոր եղանակներ ու մեթոդներ, որոնք հնարավորություն են տալիս բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, ստանալու բարձր և կայուն բերք, ավելացնելու հանրային անասունների մթերատվությունը։ Սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումները լայնորեն պրոպագանդելու, կոլտնտեսությունների, սովխոզների և մեքենա-տրակտորային կայանների, գյուղատնտեսության առաջավորների և կազմակերպիչների առաջավոր փորձը, ինչպես նաև գիտա-հետազոտական և փորձնական հիմնարկների նվաճումները կոլտն-

տեսային և սովխոզային արտադրության մեջ արագորեն արմատավորելու համար ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն որոշեցին 1954 թվականի օգոստոսի 1-ին Մոսկվայում բացել մշտական գործող Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդես։

Սահմանված է գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների ընտրության կարգը, ինչպես նաև հաստատված են այդ ընտրության ցուցանիշներն ու պայմանները։

Կոլտնտեսային և սովխոզային արտադրության բազմակողմանի զարգացումը, էկոնոմիկայի աճը թույլ տվեցին բարձրացնել ցուցանիշները Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների համար։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի որոշմանը համապատասխան սահմանված են հեկտարի եկամտաբերության, վարելահողերի, մարգագետինների և արոտավայրերի յուրաքանչյուր հարյուր հեկտարից անասնաբուծական արտադրանք ստանալու, արտադրության մեքենայացման և պրոգրեսիվ ագրոտեխնիկական նոր ձեռնարկումների կիրառման, խամ ու



խոպան և ցամաքեցված հողերի յուրացման նոր, չափազանց կարևոր ցուցանիշներ։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի այն մասնակիցներին խրախուսելու համար, որոնք առավել լավ ցուցանիշներ են ձեռք բերել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, անասնապահության մթերատվության ավելացման, գյուղատնտեսական մեքենաների, պարարտանյութերի, թունաքիմիկատների և նավթամթերքների օգտագործման ասպարեզում, սահմանված են պարգևներ և մրցանակներ, որոնք ամեն տարի շնորհելու է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի Գլխավոր կոմիտեն։

Ցուցահանդեսի բացումը նշանավոր իրադարձություն է մեր երկրում։ Ցուցահանդեսը հանդիսանում է ոչ միայն սոցիալիստական գյուղատնտեսության նվաճումների, այլև մեր Հայրենիքի ամբողջ ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի նվաճումների մի իսկական համաժողովրդական ստուգատես։

Ցուցահանդեսը կրկին ու կրկին ցույց կտա կոլտնտեսային կարգերի ուժն ու հզորությունը, կցուցադրի սոցիալիստական գյու-

ղատնտեսության առավելությունը մանր գյուղացիական և խոշոր կապիտալիստական տնտեսության հանդեպ։ Նա ցուցադրում է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի անխորտակելի ուժն ու ամրությունը, որը դիմացել է սոցիալիստական հասարակարգի հաղթանակի և ամրապնդման համար մղված պայքարի, կոմունիզմի հաջող կառուցման համար մղվող պայքարի բոլոր փորձություններին և կցուցադրի այն հսկայական օգնությունը, որ բանվոր դասակարգը ցույց է տալիս կոլտնտեսային գյուղացիությանը։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում կարտացոլվեն այն հսկայական փոփոխությունները, որ տեղի են ունեցել հետպատերազմյան ժամանակաշրջանում։

Մեր սոցիալիստական գյուղատնտեսությունն աշխարհում ամենախոշոր, ամենամեքենայացված գյուղատնտեսությունն է, որին պետությունը մատակարարում է գյուղատնտեսական նորանոր մեքենաներ, իսկ հները շարունակ փոխարինելով նորագույն մեքենաներով։

Սովետական Միությունում կան 94 հազար



կոլտնտեսություններ, մոտ ինը հազար մեքենա-տրակտորային կայաններ և ավելի քան 4.700 սովխոզներ։ Այժմ գյուղատնտեսության մեջ կան ավելի քան մեկ միլիոն տրակտոր՝ տասնհինգ ուժանոցի վերածած, միլիոնավոր շատ ուրիշ նոր ու բարդ գյուղատնտեսական մեքենաներ և մեխանիզմներ։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը ցույց կտա, թե ինչպես Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարությամբ կոլտնտեսությունները, սովխոզները և ՄՏԿ-ները պատմականորեն կարճ ժամանակամիջոցում կարողացան բուժել պատերազմի կողմից հասցրած վերքերը, և հասնել նոր հաջողությունների գյուղատնտեսական արտադրության զարգացման ասպարեզում։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը ցույց կտա հզոր տեխնիկայի վրա հենվող կոլտնտեսային գյուղացիության պայքարը՝ կոմունիստական շինարարության ծրագրի կենսագործման համար, բնակչության համար սննդամթերքների և սննդի արդյունաբերության համար հումքի առատություն ստեղծելու նպատակով։

Ցուցահանդեսի պավիլիոններում լայնորեն

կներկայացվեն ավելի քան 800 կոլտնտեսություններ, 300 սովխոզներ, 200 մեքենատրակտորային, անասնաբուժական, անտառապաշտպան և մարգագետնա-մելիորատիվ կայաններ, ավելի քան 300 անասնաբուժական ֆերմաներ, մեծ թվով գիտա-հետազոտական և փորձագիտական հիմնարկներ, գյուղատնտեսության հազարավոր առաջավորներ, կազմակերպիչներ։

Ցուցահանդեսում հիմնականը կլինի այն առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների ցուցադրումը, որոնք վարելահողերի, մարգագետինների և արոտավայրերի յուրաքանչյուր հարյուր հեկտարից արդեն ստանում են այնպիսի քանակությամբ արտադրանք, որն անհրաժեշտ է մեր երկրի ամբողջ բնակչությանը պարենով ապահովելու համար՝ ըստ գիտականորեն հիմնավորված նորմաների։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը երևան կբերի առաջավոր տնտեսությունների ամենաարժեքավոր փորձը, նրանց պրոգրեսիվ եղանակներն ու մեթոդները, որոնք հնարավորություն են տալիս աշխատանքում հասնելու բարձր ցուցանիշների։ Ցուցահանդեսը կլինի առաջավոր փորձի իսկական դպրոց, մեծագույն ուժի



օրինակ, այն ամենի պրոպագանդման ակնառու և ակտիվ ձև, որը ձեռք են բերել գիտությունը և պրակտիկան։

Համամիութենական ցուցահանդեսի մասնակիցները՝ կոլտնտեսականները, ՄՏԿ-ների, սովխոզների աշխատողները, գյուղատնտեսության մասնագետներն ու կազմակերպիչները կպսակվեն փառքով և համաժողովրդական հարգանք կվայելեն։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը իրեն հավասարը չունի աշխարհում։ Նրա զբաղեցրած տերիտորիան անցնում է 200 հեկտարից։ Այստեղ կառուցված են երեք հարյուր տարբեր պավիլիոններ, շենքեր և այլ կառուցումներ։

Այցելուները ցուցահանդեսում կտեսնեն չորս հիմնական բաժիններ։ Դրանցից կենտրոնականը այն է, որտեղ տեղավորված է գլխավոր պավիլիոնը և բոլոր 16 ռեսպուբլիկաների պավիլիոնները։

Հատուկ բաժիններում կցուցադրվեն բուսաբուծության, անասնաբուծության, գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացիայի ասպարեզում ձեռք բերված նվաճումները և այլն։

Ներկայումս երկրի տարբեր շրջաններից բյուրեր են ստացվում Համամիութենական

գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու համար ծավալված սոցիալիստական մրցության մասին։ Մտնելով մրցության մեջ Ալթայի երկրամասի, որտեղ այժմ վարում են խամ ու խոպան հողերը, առաջավոր ՄՏԿ-ների, կոլտնտեսությունների մեխանիզատորներն ու կոլտնտեսականները ստանձնում են նոր, բարձր սոցիալիստական պարտավորություններ։

Այդ մասին հաղորդումներ են ստացվում Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, Պովոլժեյի, Ուզբեկստանի, Մերձբալթյան ռեսպուբլիկաների առաջավոր շրջաններից։ Անհրաժեշտ է, որ կոլտնտեսականների և մեքենա-տրակտորային ու մասնագիտական կայանների, սովխոզների ու անտառային տնտեսությունների աշխատողների, մասնագետների ու գյուղատնտեսության կազմակերպիչների միջև ամենուրեք մասսայական սոցիալիստական մրցություն ծավալվի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի համար, գյուղատնտեսության զարգացման պետական պլանների կատարման ու գերակատարման համար։

Գյուղատնտեսության մասնագետները պետք է սոցիալիստական մրցության կազ-



մակերպողները լինեն. Նրանք պետք է պրոպագանդեն և գյուղատնտեսական արտադրության մեջ լայնորեն արմատավորեն առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների՝ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների նվաճումները, պետք է լինեն գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի համար ակտիվ մարտնչողներ։

Ճիշտ են վարվում այն գյուղատնտեսական օրգանները, մեքենա-տրակտորային կայանների և կոլտնտեսությունների ղեկավարները, գյուղատնտեսական մասնագետները, որոնք այս օրերին հատուկ հոգատարություն են ցուցաբերում գարնան դաշտային աշխատանքներում առաջադեմ ագրոտեխնիկական եղանակներ ու մեթոդներ արմատավորելու գործում, աշխատում են հաջողությամբ ավարտել անասունների ձմեռումը։

Գերազանց յուրացնել խամ, խոպան և մյուս չօգտագործված հողերը, բարձրացնել դաշտերի բերքատվությունը, ամեն կերպ զարգացնել հանրային անասնապահությունը, ընդարձակել կոլտնտեսային արտադրության մյուս ճյուղերը՝ ահա որը պետք է լինի Համամիութենական գյուղատնտեսական

ցուցահանդեսին մասնակցելու համար ծավալվող մրցության գլխավոր նպատակը։

Ուժեղացնելով Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք տվող ցուցանիշների պարզաբանումը գյուղի բոլոր աշխատավորներին, անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել կոլտնտեսականների, մեխանիզատորների, բոլոր աշխատողների աշխատանքային ակտիվությունը՝ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի կենսական խնդիրները լուծելու համար։

---

# ՍՍՌՄ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԽԱՂԱՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲՅՈՒՋԵ Է

Պրոֆ. Դ. ՇԱՔԱՐՅԱՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս տեղի ունեցած սեսիան քննարկեց և հաստատեց սոցիալիստական պետության հիմնական ֆինանսական պլանը՝ 1954 թվականի Պետական բյուջեն։

Բյուջեի եկամուտների և ծախսերի պերճախոս թվերը վառ կերպով արտացոլում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությունը, որն ուղղված է տնտեսական ու կուլտուրական խաղաղ շինարարությանը և աշխատավորների նյութական ու կուլտուրական կյանքի մակարդակի անշեղ բարձրացմանը։

ՍՍՌՄ 1954 թվականի Պետական բյուջեն հաստատված է եկամուտների գծով 572,5 միլիարդ ռուբլի և ծախսերի գծով՝ 562,8 մի-

լիարդ ռուբլի։ Այս տարի եկամուտները ծախսերի նկատմամբ գերազանցում են 9,7 միլիարդ ռուբլով, որը վկայում է սովետական բյուջեի կայունության և սովետական ռուբլու կուրսի հետագա ամրապնդման մասին։ Պետական բյուջեի ծավալն այս տարի, 1953 թվականի համեմատությամբ, կավելանա ավելի քան 48 միլիարդ ռուբլով, ընդորում եթե հաշվի առնենք մանրածախ գների իջեցումը, բյուջեի աճը է՛լ ավելի զգալի է դառնում։

Սոցիալիստական էկոնոմիկայի բուռն ծաղկման և Սովետական պետության ֆինանսական հզորության մասին ակնառու կերպով վկայում են Պետական բյուջեի աճման տեմպերը։ Եթե առաջին հնգամյակի ընթացքում բյուջեի ծախսերը տարեկան միջին հաշվով կազմում էին 21,2 միլիարդ ռուբլի, երկրորդ հնգամյակում՝ 74 միլիարդ ռուբլի, երրորդ հնգամյակում (երեք տարում)՝ 150,5 միլիարդ ռուբլի, ապա չորրորդ հնգամյակում կազմեցին արդեն 373,1 միլիարդ ռուբլի, իսկ հինգերորդ հնգամյակի չորս տարում աճեցին, տարեկան կազմելով 495,2 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ Պետական բյուջեն իր բնույթով ու նշանակությամբ արմատապես տարբերվում



է կապիտալիստական պետությունների բյուջեներից։ Կապիտալիստական պետությունների բյուջեները ամբողջովին ենթարկված լինելով ժամանակակից կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջներին, ծառայում են մոնոպոլիստական կապիտալի համար առավելագույն շահույթներ ապահովելու նպատակին։ Ագրեսիայի քաղաքականությունը և էկոնոմիկայի միլիտարացումը, որի պայմաններում անընդհատ ավելանում է իր ծանրությամբ աշխատավորների ուսերին ընկած հարկային առանց այն էլ ծանր բեռը, իմպերիալիստական պետությունների բյուջեները դարձրել են նոր պատերազմների նախապատրաստման բյուջեներ։ Հսկայական չափերով աճած ռազմական ծախսերը կլանում են բյուջետային ռեսուրսների առյուծի բաժինը, աշխատավորների անմիջական պահանջմունքների համար թողնելով, ինչպես մատնանշում էր Լենինը, «մուրացիկի բաժին»։ ԱՄՆ-ում 1954—1955 թվականների բյուջեում ռազմական ծախսերը կազմում են բյուջեի ծավալի $^3/_4$-ը, իսկ ժողովրդական կրթության ծախսերը՝ միայն ընդամենը 0,3 տոկոս։ Բյուջեների խրոնիկական բնույթ կրող դեֆիցիտայնությունը, վալյուտաների ինֆլյացիան ու արժեզրկումը վկայում են

կապիտալիզմի հետագա նեխման և տնտեսության ամբողջ կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի սրման մասին։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջներին համապատասխան՝ Սովետական պետությունը բյուջետային միջոցների մեծ մասը հատկացնում է բնակչության նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարմանը և արտադրության հետագա աճմանը։ 1954 թվականի բյուջեով այդ նպատակի համար կատարվող ծախսերը կազմում են ծախսերի ընդհանուր ծավալի $^2/_3$-ից քիչ պակաս մասը։

Ընթացիկ տարում ժողովրդական տնտեսության համար կատարվող հատկացումները պլանավորված են 326,7 միլիարդ ռուբլու չափով, որը 1950 թվականի համեմատությամբ աճ է տալիս 57 տոկոսով։ Այդ ծախսերի ընդհանուր գումարից մոտավորապես 216 միլիարդ ռուբլին առանձնացվում է բյուջեից։ 1954 թվականին հսկայական միջոցներ են հատկացվում ժողովրդական տնտեսության առաջատար օղակի՝ արդյունաբերության և առաջին հերթին ծանր արդյունաբերության ֆինանսավորման համար, որն ապահովում է ժողովրդական տնտեսության



բոլոր ճյուղերի հաջող զարգացումը և ՍՍՌՄ տնտեսական հզորության հետագա ամրապնդումը։ Ծանր արդյունաբերության գծով և արդյունաբերության մի շարք այլ ճյուղերի գծով ծախսերն այս տարի կկազմեն 133,2 միլիարդ ռուբլի, որից բյուջետային հատկացումների հաշվին՝ մոտավորապես 80 միլիարդ ռուբլի։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության շեշտակի վերելքի և առևտրական կազմակերպությունների ցանցի ընդարձակման համար բյուջեի հաշվին առանձնացվում է 14,2 միլիարդ ռուբլի, իսկ եթե հաշվելու լինենք նաև ձեռնարկությունների և տնտեսական օրգանների սեփական միջոցները, ապա այդ ծախսերի ընդհանուր գումարը կկազմի ավելի քան 36,5 միլիարդ ռուբլի։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան և Փետրվար-մարտյան պլենումների ընդունած միջոցառումների կենսագործումը պետական մեծ ծախսեր է պահանջում։ 1954 թվականին գյուղատնտեսության զարգացման ծախսերը կկազմեն 74,4 միլիարդ ռուբլի, կամ 42,4 տոկոսով ավելի, քան ներդրվել էր 1953 թվականին։ 1954 թվականին միայն վերջին որոշումներից բխող լրացուցիչ ծախսերի





համար կհատկացվի 47 միլիարդ ռուբլի, ՄՏ կայանների նյութա-տեխնիկական բազայի հետագա ամրապնդման ծախսերը 1954 թվականին աճում են 10,2 միլիարդ ռուբլով և կհասնեն 30,8 միլիարդ ռուբլու։ Գյուղատնտեսության ընդհանուր ծախսերի մեջ անհրաժեշտ միջոցներ են նախատեսված խամ և խոպան հողերի յուրացման համար։

Բյուջեն ապահովում է այն ծախսերի հատուցումը, որոնք կապված են մանրածախ գների այս տարի կատարված նոր իջեցման հետ, որը բնակչությանը տարեկան տալիս է մինչև 20 միլիարդ ռուբլու լրացուցիչ շահում։ Պարենային և արդյունաբերական ապրանքների մանրածախ գների սիստեմատիկ իջեցման շնորհիվ զգալիորեն աճել են աշխատավորների ռեալ եկամուտները և ներկայումս ժողովրդական սպառման ապրանքների գների մակարդակը 2,3 անգամ ցածր է, քան 1947 թվականին։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար արվող հատկացումների գումարը 1954 թվականին նախատեսված է 141,4 միլիարդ ռուբլի, որը նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 100 միլիարդ ռուբլով։ Այս տարի լուսավորության և կուլտուրայի համար հատ-



կացված է 67,2 միլիարդ ռուբլի, առողջապահության և ֆիզկուլտուրայի համար՝ 29,3 միլիարդ ռուբլի, սոցիալական ապահովագրության և սոցիալական ապահովության համար՝ 42,5 միլիարդ ռուբլի։ 1954 թվականին է՛լ ավելի կմեծանա բոլոր ուսումնական հաստատություններում սովորողների թիվը, մասնավորապես հաջողությամբ կկենսագործվեն պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ընդհանուր միջնակարգ կրթության զարգացման մասին, զգալիորեն կընդլայնվի և կհագեցվի սոցիալ-կուլտուրական հիմնարկների ցանցը։ Սովետական գիտության զարգացման համար այս տարի բաց է թողնվում ավելի քան 9,5 միլիարդ ռուբլի։ Այս տարի ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված է կատարել բնակարանային մեծ շինարարություն, որի համար պետության կողմից ծախսվելու է 25,5 միլիարդ ռուբլի։

Պետական բյուջեն ամբողջովին ծառայում է աշխատավորների շահերին։ Բավական է ասել, որ 1953 թվականին բնակչությունը բյուջեից 130 միլիարդ ռուբլի ավելի է ստացել, քան ինքը հատկացրել է բյուջեին, իսկ 1954 թվականին մեր երկրի աշխատավորնե-

րը բյուջեից կստանան 45 միլիարդ ռուբլի ավելի, քան ստացել են 1953 թվականին։

Հաստատակամորեն և հետևողական կերպով վարելով խաղաղասիրական քաղաքականություն, Սովետական կառավարությունը դրա հետ մեկտեղ մշտապես հոգ է տանում մեր Հայրենիքի պաշտպանունակությունն ավելի ու ավելի ամրապնդելու մասին։ 1954 թվականին պաշտպանության ծախսերը կըկազմեն 100,3 միլիարդ ռուբլի կամ բյուջեի բոլոր ծախսերի միայն 17,8 տոկոսը։ Կառավարչական ապարատի պահպանման ծախսերի կրճատման ուղղությամբ կառավարության նշած միջոցառումներն այս տարի պետությանը կտան 3,8 միլիարդ ռուբլու գումարի տնտեսում։

Տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության վիթխարի պլանի կատարումը տարեցտարի ավելացնում է կապիտալ ներդրումները, որոնց ծավալը, տնտեսությունների շրջանառու ֆոնդերի ավելացման միջոցների հետ միասին, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի գծով նախատեսված է 184,9 միլիարդ ռուբլի։ Այդ գումարից ավելի քան 121 միլիարդ ռուբլին հատկացվում է բյուջեից։

Պետական բյուջեի եկամտային մասի հիմ-



քը գլխավորապես կազմում է ազգային եկամտի աճը։ Սովետական բյուջեի սոցիալիստական բնույթը երևան է գալիս և նրա եկամուտների մեջ։ Բյուջեի եկամուտների հսկայական մասը ստացվում է սոցիալիստական ժողովրդական տնտեսությունից։ Այս տարի բյուջեի բոլոր եկամուտների 86,9 տոկոսը ստացվում է ժողովրդական տնտեսության սոցիալիստական ճյուղերից։ Իսկ բնակչությունից գանձվող հարկերը կազմում են բյուջեի եկամտային մասի միայն 8 տոկոսը, ընդ որում այս տարի գյուղական բնակչության հարկումը, 1952 թվականի համեմատությամբ, պակասում է ավելի քան 2,5 անգամ։

Բնակչության մեջ պետական փոխառությունների իրացումից բյուջեում ստացվող գումարը նախատեսված է 15,9 միլիարդ ռուբլի, իսկ փոխառությունների գծով բնակչությանը տրվող վճարները կազմում են 10,5 միլիարդ ռուբլի։ Բնակչության բարեկեցության աճման կապակցությամբ 1954 թվականին խնայդրամարկղներում ավանդների գումարի աճը նախատեսված է 9,5 միլիարդ ռուբլի։ Մինչև այս տարվա վերջը խնայդրամարկղներում բնակչության աշխատանքային խնայողությունների մնացորդը

կկազմի 48 միլիարդ ռուբլի, 1940 թվականի համեմատությամբ աճելով համարյա թե 7 անգամ։

Բյուջեի մեջ եկամուտների ժամանակին ստացումը և ամբողջ բյուջեի հաջող կատարումը անմիջականորեն կախված է տնտեսական պլանները քանակական և հատկապես որակական բոլոր ցուցանիշներով կատարելուց։ Մինիստրությունները, գերատեսչությունները, կազմակերպությունները և ձեռնարկությունները պետք է ապահովեն արտադրական ու շինարարական պլանների, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ներքին կուտակումների մոբիլիզացման, տնտհաշվարկի ամրատավորման առաջադրանքների կատարումը, վերացնեն ամեն տեսակ անարտադրողական ծախսերը, խնայողաբար օգտագործեն պետական միջոցները։

Ընկ. Գ. Մ. Մալենկովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիայում արտասանած ճառում ասաց. «Մեր բոլոր տնտեսական կադրերի— արտադրության հրամանատարների պարտականությունն է՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գտնել ռեզերվներ, դրանք գործի դնել, քիչ ծախսերով առավելագույն արդյունքների հասնել»։



1954 թվականին զգալիորեն աճում են նաև միութենական ռեսպուբլիկաների բյուջեները, որը արդյունք է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման։ Միութենական ռեսպուբլիկաների բյուջեները այս տարի հաստատվել են 119,5 միլիարդ ռուբլի գումարով, կամ 13,7 միլիարդ ռուբլով ավելի, քան 1953 թվականին։ Հայկական ՍՍՌ ընթացիկ տարվա պետական բյուջեն նախատեսված է 1 միլիարդ 225 միլիոն ռուբլի, որը 1940 թվականի համեմատությամբ աճ է տալիս ավելի քան 2,5 անգամ։

ՍՍՌՄ 1954 թվականի Պետական բյուջեն և նրա հաջող կատարումը է՛լ ավելի կամրապնդի մեր սոցիալիստական Հայրենիքի հզորությունը, որը վստահորեն առաջ է ընթանում կոմունիզմի ուղիով։

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆ ՇԱՀԵՐԻ ԶՈՒԳԱԿՑՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

ՀՈՎՀ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*Սոցիալիզմի ժամանակ աշխատավորների անձնական շահերը անխզելիորեն կապված են նրանց հասարակական շահերի հետ։ Սոցիալիստական հասարակարգում, ի հակադրություն կապիտալիզմի, արտադրությունը ոչ թե ենթարկված է շահույթ ստանալուն, այլ աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացմանը։ Սոցիալիզմի ժամանակ անձնական շահերը ոչ միայն չեն հակադրվում հասարակական շահերին, այլ զուգակցվում են իրար, անբաժանելիորեն կապված են մեկը մյուսի հետ։ Հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգակցումը՝ անձնական շահերը հասարակականին ենթարկելու պայմանով, հանդիսանում է սոցիալիստական հա-*



*սարակության կարևորագույն սկզբունքներից մեկը։ Այն նպաստում է աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, օգնում է ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը։*

*Մեր երկրում հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգակցման նյութական հիմքը հանդիսանում է արտադրության գործիքների և միջոցների հանրային սեփականությունը։ Անձնական և հասարակական շահերի զուգակցումը իրականացվում է աշխատանքի և բաշխման սոցիալիստական սկզբունքին համապատասխան՝ «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»։*

*Աշխատանքի և բաշխման այդ սկզբունքը հետևողականորեն կիրառվում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, նա կազմում է նաև կոլտնտեսային արտադրության անխախտ հիմքը, որն իր արտահայտությունն է գտել գյուղատնտեսական արտելի Կանոնադրության մեջ։ Գյուղատնտեսական արտելը հանդիսանում է միակ ճիշտ ձևը սոցիալիզմի ժամանակաշրջանում, աշխատավոր գյուղացիության հանրային տնտեսության զարգացման միջոցով սոցիալիստական ուղին փոխադրելու համար, նա*

հիանալի կերպով զուգակցում է կոլտնտեսականների անհատական և հասարակական շահերը, կոլտնտեսականների անձնական կենցաղային շահերը ենթարկում է հասարակական շահերին և հեշտացնում է նախկին մենատնտես գյուղացիների դաստիարակումը կոլեկտիվիզմի ոգով:

Կոլտնտեսությունների զարգացման և կոլտնտեսականների անձնական շահերը կոլտնտեսության ու պետության շահերի հետ ճիշտ զուգակցելու գործում վճռական դեր է խաղում հանրային սեփականությունը, որը ՍՍՌՄ-ում ունի երկու ձև՝ պետական-համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային: Պետական-սոցիալիստական սեփականությանը պատկանում է առաջատար դեր՝ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում:

Կոլտնտեսային արտադրության զարգացման գործում պետական սեփականության առաջատար դերը ապահովվում է առաջին հերթին մեքենա-տրակտորային կայանների միջոցով: Հանդիսանալով սոցիալիստական գյուղատնտեսության ինդուստրիալ-նյութատեխնիկական բազան, մեքենա-տրակտորային կայանները վճռական դեր են խաղում կոլտնտեսությունները կազմակերպորեն,



տնտեսապես ամրապնդելու, սովետական գիտության նվաճումները գյուղատնտեսության մեջ արմատավորելու և սովետական պետության ղեկավարությունը կոլտնտեսությունների նկատմամբ ապահովելու գործում:

Պետությանը պատկանող արտադրության հիմնական միջոցների գործադրումը կոլտնտեսային արտադրության մեջ զուգակցվում է գյուղատնտեսական արտելի արտադրության միջոցների և կոլտնտեսականների աշխատանքի հետ: Այս ճանապարհով տեղի է ունենում առանձին կոլտնտեսությունների և կոլտնտեսականների անձնական շահերի զուգակցումը սովետական պետության հանրային շահերի հետ: Պետական սեփականության աճումը նպաստում է հանրային տնտեսության աճմանը և ամրապնդմանը կոլտնտեսություններում, իսկ վերջինս կազմում է կոլտնտեսային կարգի հիմքը և կոլտնտեսականների ունևոր կյանքի աղբյուրը:

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում հանրային տնտեսությունը վճռական դեր է խաղում կոլտնտեսային կարգի ամրապնդման և սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքը կազմակերպելու գործում:

Կոլտնտեսությունների ամրապնդման, նը-

րանց հանրային տնտեսության աճման ու զարգացման հիման վրա աճում են կոլտըն-տեսականների անձնական դրամական և նատուրալ եկամուտները: Սովետական պետության բազմակողմանի օգնության և կոլտըն-տեսականների ազնիվ ու բարեխիղճ աշխատանքի շնորհիվ տարեցտարի աճում են կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը: Նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ 1952 թվականին մեր երկրի կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը կրկնապատկվել են:

Որքան բարձր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, որքան արագ կերպով է ավելանում հանրային անասունների գլխաքանակը և նրանց մթերատվությունը, այնքան արագ կերպով է աճում կոլտնտեսությունների ապրանքային արտադրանքը և աշխօրերի արժեքը:

Ուստի յուրաքանչյուր կոլտնտեսականի անձնական բարեկեցությունը ամենից առաջ կախված է հանրային, արտելային տնտեսության անընդհատ աճումից և ամրապնդումից, անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցումից կոլտնտեսությունում: Այսպես, օրինակ, հողի յուրաքանչյուր հեկտարը ճիշտ օգտագործելու, հողագործու-



թյան կուլտուրան և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու համար ծավալված պայքարի շնորհիվ, Մոսկվայի մարզի Լուխովիցկի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունն իր դրամական եկամուտները 1948 թվականի 1,583 հազար ռուբլուց 1952 թվականին հասցրեց 3,780 հազար ռուբլու, այդ հիման վրա կոլտնտեսականների դրամական եկամուտը մեկ աշխօրին 4,4 ռուբլուց բարձրացավ և 1952 թվականին կազմեց 10 ռուբլի:

Հայկական ՍՍՌ Շամշադինի շրջանի Կիրովի անվան կոլտնտեսության դրամական եկամուտները 1950 թվականի 603.018 ռուբլու դիմաց 1953 թվականին կազմեցին մեկ միլիոն 490.286 ռուբլի, դրան համապատասխան՝ կոլտնտեսականներին հասանելիք դրամական եկամուտը 1953 թվականին աճեց ավելի քան 4 անգամ: Հոկտեմբերյանի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության դրամական եկամուտները 1953 թվականին նախորդ տարվա համեմատությամբ աճեց 1.005.659 ռուբլով, դրա հիման վրա մեկ աշխօրի դիմաց կոլտնտեսականների ստացած դրամը 11 ռուբլուց բարձրացավ մինչև 14 ռուբլի:

Բերված օրինակներից պարզ երևում է, թե

ինչպես կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացումը և դրա շնորհիվ կոլտնտեսականների եկամուտների աճումն ու այդ հիման վրա նրանց անձնական պահանջմունքների բավարարումը իրենց հերթին նպաստում են կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացմանը կոլտնտեսային արտադրության զարգացման գործում: Ուստի անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցումը կարևորագույն միջոց է կոլտնտեսություններում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում:

Կոլտնտեսականների անձնական շահերը բավարարվում են նաև նրանց տնամերձ տնտեսության միջոցով, որը զուգակցվում է հանրային տնտեսության հետ: Այդ է պատճառը, որ գյուղատնտեսական արտելի կանոնադրությամբ յուրաքանչյուր կոլտնտեսականի տնտեսության իրավունք է վերապահվում ունենալու իր անձնական, սեփական, օժանդակ տնտեսությունը (այգի, բանջարանոց, կով, ոչխարներ և այլն)՝ իր սպառողական պահանջները բավարարելու համար: Սակայն կոլտնտեսականների անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցումը ամենից առաջ նշանակում է կոլտնտեսու-



թյան հանրային տնտեսության ընդարձակում և ամրապնդում: Անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցման գործում բացառիկ մեծ դեր է խաղում աշխօրը, որը հանդիսանում է աշխատանքի կազմակերպման և վարձատրման սոցիալիստական սկզբունքների արտահայտությունը կոլտնտեսություններում: Աշխօրը կոլտնտեսային կարգի զարգացման ներկա էտապում, որպես աշխատանքի և սպառման չափանիշ, լավագույն ձևով է զուգակցում կոլտնտեսության հանրային շահերը կոլտնտեսականների անձնական շահերի հետ: Աշխօրը խոշոր խթան է հանդիսանում, որի օգնությամբ ապահովվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսության ամրապնդումը և յուրաքանչյուր կոլտնտեսականի բարեկեցության բարձրացումը:

Առաջավոր կոլտնտեսությունների աշխատանքի փորձը, նրանց նվաճումները ցույց են տալիս այն անսահման հնարավորությունները, որ կան սոցիալիստական խոշոր գյուղատնտեսության արտադրության հիմքում: Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը կոլտնտեսային գյուղացիությանը ցույց են տալիս բազմա-

կողմանի օգնություն՝ այդ հնարավորությունները լրիվ չափով օգտագործելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը նշեց, որ մինչև վերջին ժամանակներս գյուղատնտեսության մեջ տեղի են ունեցել անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցման, աշխատողների նյութական շահագրգռվածության սկզբունքների խախտումներ։ Պարտիան և կառավարությունն անհրաժեշտ մի շարք միջոցառումներ են իրականացնում գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու, գյուղատնտեսական արտադրության ընդարձակման գործում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու, կոլտնտեսային գյուղացիության եկամուտներն ավելացնելու ուղղությամբ։

Զգալիորեն իջեցված են կոլտնտեսականների անձնական տնտեսությունից գանձվող գյուղատնտեսական հարկը և պարտադիր հանձնումների նորմաները, արդեն բարձրացվել են գյուղատնտեսական մթերքների մթերման գները։ Սովետական պետությունը լիովին զիջել է կոլտնտեսությունների գյուղատնտեսական հարկի անցյալ տարիների պարտքերը, ինչպես նաև կարտոֆիլի և ա-



նասնաբուծության մթերքների պարտադիր հանձնումների պարտքերը։ Միջոցառումներ են գործադրվում կարտոֆիլի և բանջարեղենի կոլտնտեսային առևտուրն է՛լ ավելի ծավալելու համար։ Կազմակերպվում է ավելցուկ մթերքների գնումը կոլտնտեսություններից և կոլտնտեսականներից՝ ավելի բարձր գներով։

Այդ բոլոր միջոցառումների անցկացման շնորհիվ 1953 թվականին կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները աճեցին ավելի քան 13 միլիարդ ռուբլով։ Պարտիան և կառավարությունը միջոցառումներ են անցկացնում երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման ուղղությամբ։

Անձնական ու հասարակական շահերի ճիշտ զուգակցումը կոլտնտեսություններում հանդիսանում է կարևորագույն պայմաններից մեկը սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու և այդ հիման վրա մեր երկրում ժողովրդական սպառման առարկաների առատություն ստեղծելու համաժողովրդական խնդիրը լուծելու գործում։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՏՈՐՖԱ-ԲՈՒՍԱՅԻՆ ԹԱՂԱՐՆԵՐՈՒՄ ՑԱՆՔԻ ԵՎ ՄՇԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ս. ԱՆՏՈՆՅԱՆ

*Սովետական առաջավոր գիտությունը և գյուղատնտեսության առաջավորների խիզախումները լայն հնարավորություն են ստեղծել բանջարանոցային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում։ Այդ խիզախումներից մեկն էլ տորֆա-բուսային թաղարներում բանջարեղենի ցանքը կատարելու մեթոդն է, որը լայն տարածում է ստացել մեր երկրի բազմաթիվ կոլտնտեսություններում, ինչպես նաև Շահումյանի շրջանում։*

*Շրջանի կոլտնտեսությունները ընթացիկ տարում մի քանի տասնյակ հեկտար տարածության վրա բանջարանոցային կուլտուրաներ են աճեցրել տորֆա-բուսային թաղարներում կատարվող ցանքի միջոցով։*



*Կոլտնտեսականների հետ ագիտատորները սիստեմատիկաբար զրույցներ են ունենում տորֆա-բուսային թաղարներում բանջարեղենի ցանքի և այդ մեթոդով բանջարեղենի բարձր բերք աճեցրած Միության, ինչպես նաև մեր ռեսպուբլիկայի և մեր շրջանի առաջավոր կոլտնտեսությունների փորձի և ձեռք բերած նվաճումների մասին։*

*Այդ գործում աշխատանքի ուսանելի փորձ ունի Չարբախի կոլտնտեսության ագիտատոր ընկ. Ստեփան Արոյանը։ Օրերս նա կոլտնտեսության բանջարաբույծների համար հատուկ զրույց կազմակերպեց տորֆա-բուսային թաղարներում բանջարա-բոստանային կուլտուրաների ցանք կատարելու և այն մշակելու առաջավոր փորձի մասին։ Դիմելով ունկնդիրներին, նա ասաց,— այժմ պարտիան ու կառավարությունը խնդիր են դնում ավելացնել բանջարեղենի արտադրությունը և լիովին բավարարել բնակչության և արդյունաբերության աճող պահանջմունքները։ Ագիտատորը ունկնդիրներին հանգամանորեն պատմեց մեր երկրի առաջավոր բանջարաբույծների մասին, որոնք բանջարեղենի ռեկորդային բերք են ստացել։*

*— Անցյալ գյուղատնտեսական տարում, ասաց նա, Մինսկի մարզի Մինսկի շրջանի*

Գաստելլոյի անվան կոլտնտեսությունում բրիգադիր ընկ. Մազուրկովիչը հողի նույն տարածությունից 40 տոկոսով բանջարեղենի ավելի բերք հավաքեց, քան կոլտնտեսության մյուս բրիգադաները, Կիևի մարզի Կիևո-Սվյատոշինսկի շրջանի «Բոլշևիկ» կոլտնտեսությունում բանջարաբույծ Զուպրովսկին, որը սածիլներն աճեցրել էր թաղարներում, մյուս բանջարաբույծների համեմատությամբ, ամեն մի հեկտարից 48 ցենտներ կաղամբի, 36 ցենտներ պամիդորի, 40 ցենտներ վարունգի ավելի բերք ստացավ։

Այս կոլտնտեսություններում անցյալ տարի բանջարանոցային կուլտուրաների ցանքը սկսվեց 10 օր ուշ, քան մեր կոլտնտեսությունում, սակայն նրանց մոտ բերքահավաքը սկսվեց 5 օր շուտ, քան մեզ մոտ։ Այդ նշանակում է բույսի բերքատվության շրջանը երկարացնել, որը հենց բարձր բերք նվաճելու գլխավոր պայմաններից մեկն է։

Նշված կոլտնտեսություններում բանջարեղենի միջշարային կուլտիվացիան, փխրեցումը և մշակության մի շարք այլ աշխատանքներ ամբողջովին մեքենայացված են, մինչդեռ մեր կոլտնտեսությունում մշակության աշխատանքների մեծ մասը կատարվում է ձեռքով։ Մեկ հեկտար տարածության



վրա կատարելով գրեթե նույնքան աշխատանք, անցյալ տարի մեր կոլտնտեսությունը 3000 ռ. ավելի պակաս եկամուտ ստացավ, քան Մինսկի շրջանի Գաստելլոյի անվան և «Բոլշևիկ» կոլտնտեսությունները։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։ Ինչպես գիտեք մեր կոլտնտեսությունը մոտ 100 հեկտար տարածության վրա բանջարեղեն պետք է աճեցնի։ Եթե այդ տարածությունը մշակվի նոր մեթոդով, ապա հնարավոր կլինի կոլտնտեսության ընդհանուր եկամուտը ավելացնել առնվազն 2—3 հարյուր հազար ռուբլով և մեկ աշխօրի միջին հասանելիքը՝ 2—3 ռուբլով։ Բացի այդ, բանջարեղենի ցանքի մշակության մեքենայացման շնորհիվ կտնտեսվի մեծ քանակությամբ բանվորական ուժ, որը կարելի է օգտագործել կոլտնտեսային աշխատանքի այլ ճակատամասերում։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պատմեց բանջարանոցային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու գործում իրենց կոլտնտեսության և հարևան կոլտնտեսությունների առաջավոր բրիգադաների, օղակների ու բանջարաբույծների կատարած աշխատանքի մասին։ Նորագավթի, Սպանդարյանի և մեր կոլտնտեսության առանձին

հողամասերից,— ասաց ագրոնոմը,— անցյալ տարի 500—600 ցենտներ պոմիդորի, պղպեղի և դդմիկի բերք ստացվեց: Այդ բերքը ավելի շատ կլիներ, եթե ցանքը կատարված լիներ տորֆա-բուսային թաղարներում: Դա հնարավորություն կտար մինչև աշնան ցրտահարության սկսվելը բերքը հավաքել լրիվին, իսկ մինչև հիմա մենք բանջարանոցային կուլտուրաների՝ հատկապես պոմիդորի և պղպեղի բերքը դաշտից լրիվին չենք կարողանում հավաքել, որովհետև նրա մի մասը ցրտահարվում է: Գործնականում ապացուցված է, որ տորֆա-բուսային թաղարների դեպքում բանջարանոցային կուլտուրաների բերքահավաքը կարելի է առնվազն 5—10 օր շուտ սկսել և յուրաքանչյուր հեկտարից 20—30 ցենտներ լրացուցիչ բերք հավաքել:

Զրույցի վերջում կոլտնտեսականները մի շարք հարցեր տվեցին ագրոնոմին, որոնց նա և ՄՏ կայանի ագրոնոմը (վերջինս հենց այդ նպատակով հրավիրված էր զրույցին մասնակցելու) գոհացուցիչ պատասխան տվեցին: Այժմ կոլտնտեսականները թաղարները հաջողությամբ տեղափոխում են դաշտ:

Թաղարների դաշտ տեղափոխումը մեծ հետաքրքրություն է առաջ բերել կոլտնտե-



սային աշխատավորների լայն շրջանում: Մեծ թվով բանջարաբուծներ ակտիվ կերպով մասնակցում են այդ աշխատանքներին և խելացի առաջարկություններ անում բանջարանոցային կուլտուրաների մշակությունը բարելավելու վերաբերյալ: Տորֆա-բուսային թաղարների պատրաստման, ցանքի և մշակության արդյունքների մասին ագրոտեխնիկական աշխատանք են կատարում նաև շրջանի մյուս կոլտնտեսություններում: Մեքենա-տրակտորային կայանի ագրոնոմ Հ. Յաղուբյանը, որը մասնագիտությամբ ագրոնոմ է, հաճախակի զրույցներ է ունենում Շահումյան ավանի Ստալինի անվան կոլտնտեսության բանջարաբույծների հետ՝ տորֆա-բուսային թաղարների մշակության մասին: Բացի զրույցներ կազմակերպելուց, նա տորֆա-բուսային թաղարների և բանջարեղենի քառակուսի-բնային ցանքին նվիրված խլեչովկաներ, պատի թերթեր է լույս ընծայում:

Շրջանի ագրոնոմները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ առաջիկայում ավելի եռանդագին կաշխատեն և կօգնեն կոլտնտեսություններին՝ արտադրության մեջ լայնորեն արմատավորելու գիտության նվաճումները և առաջավոր փորձը:

---

# ԱՆՇԵՂՈՐԵՆ ԲԱՐՁՐԱՆՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հաջողությամբ իրականացնում են իրենց գլխավոր խնդիրը՝ անընդհատ բարելավում են բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, բոլոր սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը։*

*Մեր երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության աճի, ազգային եկամտի աճի հիման վրա խոշոր հաջողություններ են ձեռք բերվել սովետական ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման գործում։ Այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։*

✪ *Մեր երկրի աշխատավորների՝ բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների եկամուտների ընդհանուր գումարը, հաշվի առնելով պետական մանրածախ գների իջեցումը, անցած չորս տարում աճել է 60 տոկոսով։ Այդ նշանակում է, որ մեզ մոտ սիստեմատիկաբար բարձրանում է բանվորների ու ծառա-*



*յողների ռեալ աշխատավարձը, ավելանում են կոլտնտեսականների եկամուտները։*

✪ *ՍՍՌՄ-ում անընդհատ ավելանում է ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը։ Միայն 1953 թվականին գործարկվեց ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող մոտ 300 նոր ձեռնարկություն։ Միաժամանակ թեթև ու սննդի արդյունաբերության գործող ձեռնարկություններում կատարվում է սարքավորման նշանակալի նորացում։*

✪ *Միայն վերջին չորս տարում արդյունաբերական, գյուղատնտեսական ձեռնարկությունների, կուլտուր-կենցաղային հիմնարկների և բնակարանային շինարարության մեջ ներդրվել է ավելի քան 500 միլիարդ ռուբլի, կամ 52 տոկոսով ավելի, քան նախորդ չորս տարիներին։ Հետպատերազմյան տարիներին քաղաքներում և ավաններում կառուցվել են ավելի քան 183 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն՝ բանվորների ու ծառայողների համար և ավելի քան 4 միլիոն տուն՝ կոլտնտեսականների ու գյուղական ինտելիգենցիայի համար։*

✪ *1954 թվականի համար կառավարությունը նախատեսել է իրականացնել բնակելի տների շինարարության լայն ծրագիր։ Այդ նպատակով առանձնացված է 25,5 միլիարդ ռուբլի, որ զգալիորեն գերազանցում է անցած տարվա ծախսերը։*

✪ *Ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը միայն անցյալ տարի, 1949 թվականի հա-*

մեմատությամբ, ավելացավ 65 տոկոսով։ Զկան որսի, մսի, կենդանական յուղի, շաքարավազի, բրդե գործվածքների արտադրության միմիայն այն աճը, որ ձեռք կբերվի 1954—1956 թվականներին, կգերազանցի այդ ապրանքների արտադրության 1940 թվականի ամբողջ ծավալը։

✪ 1947 թվականից սկսած 7 անգամ անց է կացվել լայն սպառման ապրանքների մանրածախ գների իջեցում և, դրանով իսկ, անշեղորեն աճում է բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը։ Օրինակ, 1953 թվականին ընդհանուր առմամբ բանվորների ու ծառայողների եկամուտը մեկ աշխատողի հաշվով 1952 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 13 տոկոսով։ Միայն անցյալ տարվա և այս տարվա գների իջեցումից բնակչությունն ստացավ 70 միլիարդ ռուբլու օգուտ։

✪ Ժողովրդի նյութական բարեկեցությունը բարձրացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության կողմից վերջերս ընդունված միջոցառումների շնորհիվ (սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար պետության ծախսերի ավելացում, գների իջեցում և այլն) Սովետական Միության բնակչությունը 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, կստանա մոտ 45 միլիարդ ռուբլու լրացուցիչ օգուտներ։

✪ ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացման մասին պարտիայի և կառավարության կողմից ընդունված



միջոցառումների շնորհիվ կոլտնտեսությունների և կոլտնտեսականների դրամական եկամուտները 1952 թվականի համեմատությամբ 1953 թվականին ավելացան գրեթե 45 տոկոսով։ Դրամական եկամուտների աճի կապակցությամբ կոլտնտեսությունների միջոցները Պետբանկի նրանց հաշիվներում 1953 թվականի ընթացքում ավելացան 85 տոկոսով, իսկ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի միջոցները Գյուղբանկի հաշիվներում՝ 32 տոկոսով։

✪ ՍՍՌՄ ազգային եկամտի աճման շնորհիվ 1953 թվականին է՛լ ավելի բարձրացավ ժողովրդական սպառման մակարդակը. բանվորների, ծառայողների և գյուղացիների եկամուտների ընդհանուր գումարը 1953 թվականին 1952 թվականի համեմատությամբ (համադրելի գներով) աճեց ավելի քան 13 տոկոսով։

✪ Բանվորները, կոլտնտեսականները, ծառայողները 1952 թվականի 61 միլիարդ ռուբլու դիմաց 1953 թվականին ստացել են 130 միլիարդ ռուբլով ավելի, քան նրանք իրենց անձնական եկամուտներից մուծել են բյուջե։

✪ Բնակչության եկամուտների սիստեմատիկ ավելացման շնորհիվ մեր երկրում գնալով ավելանում է ապրանքաշրջանառությունը։ Մանրածախ ապրանքաշրջանառությունը 1953 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, համադրելի գներով ավելացել է 21 տոկոսով, իսկ գյուղում՝ 24 տոկոսով։

✪ Առևտրական կազմակերպությունները 1953

թվականին և 1954 թվականի առաջին եռամսյակում, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանների համեմատությամբ, բնակչությանը վաճառելու համար շատ ավելի ապրանք են ստացել։ Միայն այս տարվա առաջին եռամսյակում, 1953 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մսամթերքներ ստացվել է 39,7 տոկոսով ավելի, ձկնամթերքներ՝ 14,9 տոկոսով, կենդանական յուղ՝ 40,5 տոկոսով, շաքար՝ 22,2 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 67,6 տոկոսով, մետաքսե գործվածքներ՝ 70,3 տոկոսով և այլն։

✪ Մանրածախ ապրանքաշրջանառությունը 1954 թվականի առաջին եռամսյակում, 1953 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, աճել է ընթացիկ գներով 15,5 տոկոսով, իսկ համադրելի գներով՝ 30 տոկոսով։ Գյուղում ապրանքաշրջանառությունը ընթացիկ գներով աճել է 26 տոկոսով, համադրելի գներով՝ 40 տոկոսով։

1951—1955 թ. թ. հնգամյա պլանով նախատեսված էր հինգ տարում ապրանքների գների իջեցում կատարել 23,5 տոկոսով։ Գների՝ սույն թվականի ապրիլի 1-ից կատարված իջեցման հաշվառումով, հինգերորդ հնգամյակի չորս տարում գներն արդեն իջել են ավելի քան 25 տոկոսով։ Գների իջեցման վերաբերյալ հնգամյա պլանը կատարված և գերակատարված է։

✪ Ապրանքների այն քանակը, որ բնակչությունը



կարող էր 1947 թվականին գնել 1000 ռուբլով, այժմ կարող է գնել 433 ռուբլով, այսինքն 567 ռուբլի մնում է բնակչության տրամադրության տակ՝ իր սպառումն ու խնայողությունները բարձրացնելու համար։ Յոթ տարվա ընթացքում այդպիսի նվաճումը մատչելի չէ ուրիշ ոչ մի պետության, բացի սոցիալիստականից։

✪ Մեր երկրի բանվորների ու ծառայողների միջին դրամական աշխատավարձը ամբողջությամբ վերցրած 1940 թվականի համեմատությամբ 1953 թվականին բարձրացել է 219 տոկոսով։

✪ Այժմ արդեն բնակչության համար շատ կարևոր որոշ ապրանքներ վաճառվում են նախապատերազմյան 1940 թվականից ավելի ցածր գներով, ինչպես, օրինակ, ոչխարի միսը, թռչունը, երշիկը, սոսիսկան, կարտոֆիլը, բանջարեղենը, մրգեղենը, ցորենի սպիտակ հացը, որ քաղաքային բնակչության սպառման մեջ ներկայումս կազմում է ավելի քան 50 տոկոս։ Մինչպատերազմյանից ավելի ցածր գներով են վաճառվում մահճակալները, ձեռքի ժամացույցները, պատեֆոնները, մեխը, ցեմենտը, շիֆերը, սպիտակ ներկը, օլիֆը և մի քանի այլ ապրանքներ։

Հնգամյա պլանով նախատեսված է հինգ տարում բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձի բարձրացում՝ 35 տոկոսով։ Ելնելով գների՝ ընթացիկ տարում կատարված իջեցումից, ռեալ աշխատավարձի բարձրացման գծով հնգամյակի առաջադրանքի

*կատարումը ապահովվում է ժամկետից շուտ՝ չորս տարում։*

Այդ ամենը աշխատավոր մարդու կարիքների նրկատմամբ պարտիայի և կառավարության մշտական հոգատարության պրակտիկ ճառատումն է։ Այդ ամենն ասում է, որ մեր կառավարությունը իսկական ժողովրդական կառավարություն է, որ նրա խոսքը գործից երբեք չի տարբերվում։

---



# ՔԻՄԻԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*ՍՍՌՄ քիմիական արդյունաբերությունը 1964 թվականին մոտավոր հաշվարկումներով գյուղատնտեսությանը կտա 28—30 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, որի ճիշտ և լրիվ օգտագործմամբ ամեն տարի երկիրը լրացուցիչ կերպով կստանա 2 միլիոն տոննա բամբակի, վուշի, կանեփի թել, մոտ 3 միլիոն տոննա շաքար, մոտ 30 միլիոն տոննա կարտոֆիլ, ավելի քան 50 միլիոն տոննա հացահատիկ և այլն։ Այդ բոլորի հետ միաժամանակ մեծ քանակությամբ կբարձրանա բանջարեղենի, պտղատու այգիների, կերաբույսերի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների բերքատվությունը։ Միաժամանակ գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու համար քիմիական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տալիս է թույներ, որոնք մեծ չափերով նպաստում են բերքատվության բարձրացմանը։*





Սովետական քիմիկոսները ստեղծել են քիմիական նոր միջոցներ, որոնք արագացնում կամ դանդաղեցնում են բույսերի աճը, ոչնչացնում են մոլախոտերը։ Քիմիան մեծ դեր է խաղում հատկապես բուսական և կենդանական հումքի վերամշակման գործում։

Գիտության կողմից հաստատված է, որ նպաստավոր պայմաններում մեկ կիլոգրամ կալիական պարարտանյութը հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը ավելացնում է 7 կիլոգրամով, շաքարի ճակնդեղինը՝ 50 կիլոգրամով, կարտոֆիլինը՝ 40 կիլոգրամով, բամբակինը՝ 2 կիլոգրամով, վուշի թելինը՝ 9 կիլոգրամով և այլն։ Ֆոսֆորային պարարտանյութի մեկ կիլոգրամը հացահատիկի բերքատվությունը բարձրացնում է 20 կիլոգրամով, շաքարի ճակնդեղինը՝ 55 կիլոգրամով, կարտոֆիլինը՝ 50 կիլոգրամով, բամբակինը՝ 6 կիլոգրամով, վուշի թելինը՝ 12 կիլոգրամով։ Ազոտային պարարտանյութի մեկ կիլոգրամը հացահատիկի բերքատվությունը բարձրացնում է 20 կիլոգրամով, շաքարի ճակնդեղինը՝ 140 կիլոգրամով, կարտոֆիլինը՝ 120 կիլոգրամով, բամբակինը՝ 14 կիլոգրամով և վուշի թելինը՝ 15 կիլոգրամով և այլն։

1964 թվականին մեր քիմիական արդյու-



նաբերության կողմից արտադրվող հանքային պարարտանյութերի քանակը կկազմի աշխարհում արտադրվող ամբողջ հանքային պարարտանյութերի կեսից ավելին։ Այդ նշանակում է, որ այժմ յուրաքանչյուր երկու տարվա ընթացքում ՍՍՌՄ-ում կառուցվելու և գործարկվելու է այնքան հանքային պարարտանյութ արտադրող գործարան, որքան կառուցվել է մինչպատերազմյան հնգամյակներում՝ միասին վերցրած։ Այժմ սովետական քիմիկոսները լուրջ աշխատանք են տանում հանքային պարարտանյութերի ծավալը փոքրացնելու և էֆեկտիվությունը բարձրացնելու ուղղությամբ, որը հնարավորություն կտա տրանսպորտը ազատել ավելորդ փոխադրումներից և միաժամանակ թեթևացնել մարդու աշխատանքը։ Գյուղատնտեսական թույները հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնում են մոտավորապես 15 տոկոսով, բանջարեղենինը՝ 20 տոկոսով, պտուղներինը՝ 30—40 տոկոսով։

Սովետական գիտնականները քիմիան ի սպաս են դրել երկրում կենսամթերքների առատություն ստեղծելու, սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման գործին։

---

Խմբագիր՝ Գ.Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

№ 10 1954 г.

БЛОКНОТ АГИТАТОРА

*ՎՖ 10523* *Պատվեր 425* *Տիրաժ 8300*

*Պոլիգրաֆտրեստի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*